# “ԶԱՐԹՕՆՔ„ ԲԱՑԱՌԻԿ

ՆՈՒԻՐՈՒԱԾ՝

ՌԱՄԿԱՎԱՐ ԱԶԱՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԻՆ

ԵՒ «ԶԱՐԹՕՆՔ» ՕՐԱԹԵՐԹԻ ՔՍԱՆՀԻՆԳԱՄԵԱԿԻՆ



1962 ՍԵՊՏԵՄԲԵՐ, ՊԷՅՐՈՒԹ -

ՏՊԱՐԱՆ ԱՏԼԱՍ

# ՌԱՄԿԱՎԱՐ ԱԶԱՏԱԿԱՆ ՀԻՄՆԱԴԻՐ ԺՈՂՈՎԷՆ Ի ՎԵՐ

ԼԵՒՈՆ ԹԻՒԹԻՒՆՃԵԱՆ

Անկից ի վեր վարժուած ենք ցրօնքին... Վարժուած ենք մեր համրանքը գտնել աշխարհի չորս ծագերուն:

Այդպէս չէր առաջ: Հայոց աշխարհին 9/10-րդին վրայ թիւ մըն էինք եւ երբ 1915-ի Մեծ Եղեռնը այդ թիւը կոտորակեց եւ մեր երկրի այդ տարածութիւնը վերածեց անդոհական ամայութեան, վերապրողներուն համար սարսափելի էր համրանք հաշուելու գաղափարն իսկ, ոչ թէ Մոլորակին վրայ, ինչպէս այժմ, այլ բնիկ երկրի այդ աւերակներուն վրայ: Հայրենի հողին կառչած, անհամար խորշակներու դէմ դնելով, մեր նախնիք, տեւելու եւ տեւելով՝ Հայրենի աշխարհ տեւական պահելու հրաշքը գործած էին, մինչեւ սերունդը՝ որ սպանդանոց տարուեր էր: Աղէտին յաջորդող առաջին տարիներուն՝ Մեծ Պատերազմին բոցերը աւելի ծաւալեր էին, բայց ռուսական բանակները 1916-ին ազատագրեր էին մեր երկիրը, եւ սկսեր էր պարզուիլ տեսարան մը, որ Ջրհեղեղեան վաղորդայնի կրկնութիւնը ըլլալ կը թուէր: Այն ատեն վերջապէս սկսանք մեր Մնացորդացը հաշուել, մեր համրանքը աւելի էր քան Նոյի Տապանէն ելողներունը, աւելի էր՝ քան Հայկայ քաջերու 300-ը... և կ'ուզէինք գոյատեւել, վերականգնիլ, հաւաքուիլ, մեր նոր կեանքը ձեւակերպել, դուցէ լաւագոյն իմաստութեամբ՝ որովհետեւ տառապանքը աւելի հասուն կ'ընծայէ միտքը:

Այսպէս է որ մեր Մնացորդացը ինքնահաւաքի պայքար մղեր էր հինգ տարի... Անապատներու մէջ՝ հիւծելով բայց տոկալով, բնիկ երկրի եւ Կովկասի մէջ՝ ոգորելով, կռուելով եւ հաւատքով, Ամերիկայի եւ հին գաղութներու մէջ շարժումով, անձկութեամբ՝ բոլորս ալ կառչած Յոյսին:

Համրանքը թուել՝ կը նշանակէ միութեան ձգտիլ, վերակազմուիլ: Գաղութներու մէջ Ազգային Միութեան շարժում սկսաւ, Երկրի եւ Կովկասի մէջ կազմուեցան Հայրենակցական Միութիւններ եւ Արեւմտահայ Համագումար, Կիլիկիոյ մէջ՝ Հայկական Լէգէոնի



մուտքը:

Այն ատեն կը հաւատայինք մեր արդար դատին լուծման...:

Արեւմտահայ քաղաքական միտքը սկսաւ կազմակերպուիլ ձեռք առնելու համար իր ճակատագիրը: Արեւմտահայ երկու կուսակցութիւններ, Հայ Ռամկավար եւ Ազգ. Ազատական, այս հինգ տարիներու ընթացքին գործակցեր էին ամենուրեք գոյատեւման պայքարին մէջ, մանաւանդ Երկրի մէջ, ռուսական բանակներու մուտքին համընթաց, վերաշինութեան և ապահովութեան կազմակերպութեան գծով: Անոնք է որ ազգային դիւցազն Անդրանիկի հետ՝ որ այդ անձկութեան օրերուն Հայու հողին կ'անձնաւորէր՝ նախաձեռնողներ էին Արեւմտահայ Համագումարին Երեւանի մէջ: Անոնք միասնաբար գլուխ կանգնեցան, իրագործելու համար արեւմտահայ քաղաքական մտքի արտայայտութեան կոչուելիք Միութիւնը:

***

Վերջապէս եկան զինադադարը եւ Սեւրի դաշնագիրը...:

1920-ի Սեպտեմբերին, երկու կուսակցութիւնները իրենց Ընդհ. Պատգամաւորական ժողովները գումարեցին Պոլսոյ մէջ, եւ որոշեցին միանալ: 1921-ին երկու պատգամաւորական ժողովներու Համագումար հանդիսաւոր Ուխտին մէջ հիմը դրուեցաւ Ռամկավար Ազատական Կուսակցութեան:

***

Քառասուն տարիներ անցած են այն օրէն ի վեր:

Վերի ակնարկներով ջանացինք ուրուագծել Մեծ Եղեռնէն վերապրող արեւմտահայութեան հոգեկան վիճակը, որպէս զի այսօր կարելի ըլլայ ըմբռնել մթնոլորտը այդ պատմական համագումարին, եւ հասկնալ անոր նշանակութիւնը մեր քաղաքական մտքի վերամշակման տեսակէտով:

Վարժուած ենք այլեւս աշխարհի չորս ծագերէն զիրար գտնելու, ...բայց այն ատեն, Աղէտէն ետք առաջին անգամ էր այդ հաւաքը, առաջին անգամ էր որ առիթը կը ներկայանար մեր վիշտը եւ յոյսերը կարդալու իրարու աչքերուն մէջ:

Մեր նոր սերունդին համար դժուար է երեւակայել այժմ, թէ ինչ զգացումով է որ կը դիմաւորէինք զիրար Պերայի այդ ակումբին մէջ խառնուած պատգամաւորներ Երեւանէն, Կիլիկիայէն, Ամերիկայէն, Եգիպտոսէն, Եւրոպայէն...: Այդ սրահին եռուզեռին մէջ միացեալ գաղափարականով իրարու հաղորդուողները այս հինգ տարիներու ընթացքին անօրինակ փորձութիւն եւ փորձառութիւն ապրած էին: Անոնք իրաւամբ կը խորհրդանշէին արեւմտահայ վերապրումը, որովհետեւ տառապանքի եւ պայքարի մէջ հասունցած խորհողութիւն մը կը ներկայացնէին, ձերբազատուած՝ անցեալէն որմէ սակայն չէր խզուած, ԺԹ. դարու «Կովկասեան Ռոմանթիզմին» կառչած «Փանջունիներու» եւ «Ազգ Նազարներու» սերունդը՝ հակառակ Մեծ Աղէտին:

Իւրաքանչիւրս ունէինք ոդիսական մը, պայքարի հեւք մը, վերապրումի հրաշք մը: Ունէինք մեր մեռելներուն կտակը, անոր վրայ երդուելու համար, թէ այլեւս նուիրական պիտի ըլլար մեզի համար ամէն բանէ առաջ, մեր ժողովուրդին կեանքին պատասխանատուութիւնը, անոր ծառայելու սկզբունքով: Այդ գնով է որ կրնար կեանք առնել մեր գերեզմաններուն վրայ տարածուող երազը...:

***

Նորակազմ Ռամկավար Ազատական Կուսակցութեան Կեդր. Վարչութիւնը գործունէութեան կը ձեռնարկէր անձկալի օրերու մէջ: Դաշնակիցներու յաղթանակէն յետոյ քաղաքական հակամարտութիւնները դանդաղ պառակտեր էին, մեր դատին լուծումը չէր հետաքրքրեր այլեւս յաղթականները,

որոնցմէ իւրաքանչիւրը այժմ կը ջանար երկուան Թշնամին սիրաշահիլ:

Պոլիս հաստատուած մեր Կեդրոնական Վարչութիւնը կը հրաւիրէր Իսթանպուլի կղզիներու կրտսերին Փրոթիի («Հայ կղզի» կոչուած այն օրերուն) մէջ, Ռ. Ա. Կուսակցութեան Ընդհ. Պատգ. Ժողովը նոյն կազմով: Մէկ տարուան մէջ շատ դէպքեր պատահած էին...: Սեւրի դաշնագիրը ջուրը ինկած էր, Երեւանի մէջ իշխանութիւնը ձեռք առած էր Լենինի կուսակցութիւնը, բնիկ ժողովուրդին ազատութիւնը հաստատելով՝ իր բնական պաշտպանին, ռուս ժողովուրդին եղբայրական աջակցութեամբ: Ռուս Յեղափոխութեան կովկասեան անիշխանութեան երկու տարիներուն, այդ պաշտպանութենէն զրկուած՝ Թշնամիներէ եւ ներքին անիշխանութենէ պաշարուած, կովկասեան Հայաստանէն մնացեր էր 12,000 քառ. քմ. խեղդիչ «տարածութիւն» մը միայն, Թուրք բանակին սպառնալիքին տակ: Այդ «տարածութիւնը» կը վերածուէր 30,000 քառ. քմ.ի, որուն վրայ խաղաղ եւ ապահով, երկրի ժողովուրդը պիտի կրնար այլեւս դարմանել իր վէրքերը, նուիրուիլ շինարարութեան, երկիրը ծաղկեցնել, նորոգ ստեղծել՝ յեղափոխութեան նոր խոյանքին մէջ՝ այն մեծ ժողովուրդին՝ որուն յանձներ էր իր ճակատագիրը հարիւր տարի առաջ: Այս օր, հոն ալ կը տօնեն քառասնամեակ մը, որ ճշմարիտ յարութեան քառասնամեակը կը հանդիսանայ՝ հայ ժողովուրդին:

⁂

Իսթանպուլի այդ փոքրիկ կղզին մեր Ընդհ. Պատգամաւորական Ժողովին մէջ, մեր բոլոր յուսախաբութիւնները հաստատուեցան, եւ քաղաքական յստակատեսութեամբ ըմբռնուեցաւ նշանակութիւնը հայ քաղաքական եւ պետական վերածնունդի այդ իրողութեան, որուն պէտք էին դառնալ աչքերը: Այլեւս մեր արդար ակնկալութիւններուն հանգրուանը կը վերածուէր աշխարհագրի մնացորդացի, եւ մեր անմիջական ճիգը կ'ուրուագծուէր՝ Ազգապահպանութիւնը:

Այսօր, հայ իրականութեան զուգընթաց այս երկու քառասնամեակները իրողութիւն մը կը լուսաւորեն, որմէ կ'ապացուցուի, որ մենք ճի՛շդ եւ հեռատես ուղղութիւն մը որդեգրեր էինք Սովետական Հայաստանի հանդէպ, անկախ մեր ընկերային բարեշրջական ըմբռնումներէն:

Այս տարի երբ կը տօնենք Ռամկավար Ազատական Կուսակցութեան 40–ամեակը, եւ յետահայեաց ակնարկ մը կը նետենք անոր բոլորած գործունէութեան շրջանին վրայ, կրնանք գոհունակութեամբ հաստատել թէ, ան գոնէ իր գլխաւոր առաջադրութեան մէջ՝ առաջադրութիւն՝ որ իր կազմութեան դիտակցական խարիսխն էր եղած, կրցած է կարելիութեան չափով, յարատեւել դժուարին պայմաններու մէջ: Ներշնչել արեւմտահայ ժողովուրդին քաղաքական հասունութեան եւ իրատեսութեան ոգի, որոնց չգոյութիւնը մեզ առաջնորդեց աննախընթաց Աղէտին: Կը յուսայինք, եթէ մեր երկիրը ազատագրուէր, այդ ոգիով կռել քաղաքական պետականութիւն: Վերածուեցանք ցրօնքի: Յարատեւելով այդ ուղղութեան մէջ՝ կրնայինք ապահովել ազգապահպանումը, որովհետեւ այդ ոգի՛վ միայն մեր ցրօնքը կրնար զուսպ և իրատես դատողութեամբ շարժիլ աշխարհի չորս ծագերուն, եւ իր ազգային գաղափարականին մնալ հաւատարիմ:

Ջանացինք դրական քաղաքական մտածողութիւն մշակել արտահայութեան մէջ, երբ ան Սփիւռքի վերածուեցաւ, որովհետեւ անո՛ր պէտք ունէր իր գաղութներուն մէջ, հանդէպ զինք հիւրընկալող երկիրներուն, անո՛ր պէտք ունէր աշխարհի այս յարատեւող անհանգստութեան, փոփոխականներուն եւ վտանգներուն մէջ, որովհետեւ անո՛ր պէտք ունէր իր յոյսերուն յարատեւութեան եւ իր ճակատագրին հանդէպ իր հոգեկան հակազդեցութեանց համար:

Այս ուղիով պայքարեցանք հեշտագին ամբոխավարութեան մը չարիքներուն դէմ, որ այս երիցս տարալիր ժողովուրդին մէջ մշտնջենաւորել կը ջանային Աղէտէն առաջուան չարիքը, որ կովկասահայ հին գործիչներու ներմուծած «ռոմանթիզմ»ն էր, չափի եւ իրողութեան մերժում: Ուզեցինք ըմբռնել և ըմբռնելի ընծայել, առաջին օրէն, հայրենի քաղաքական վերածնունդի եւ պետականութեան Երջանկութիւնը, որ այսօր քառասուն տարի վերջ կը հաստատուի իրողութիւններով, երբեմն անյուսալի իրողութիւններով: Ջանացինք առաջնորդել եւ պահպանել՝ պաշտպանելով այն բոլոր տարրերն ու հաստատութիւնները – սկսելով Հայոց Եկեղեցիէն եւ անոր միասնական Աթոռէն – Սփիւռքի ազգապահպանման հիմնական խարիսխները եւ ազգային միասնականութեան ըմբռնումը:

⁂

Անշուշտ կրնանք ըսել որ մասամբ յաջողած ենք եւ մեր ուղղութիւնը իրեն հետեւորդ ունի Սփիւռքի լայն հատուածը, որովհետեւ առանց այդ իրողութեան՝ կործանած պիտի ըլլային այդ խարիսխները: Անոնք կանգուն են հակառակ բոլոր ինքնակործան գրոհներու, այս քառասուն տարիներու ընթացքին: Չէինք կրնար անշուշտ ամէնքը առաջնորդել ողջմտութեան եւ քաղաքական հասունութեան, արժէքներու ճիշդ գնահատութեան. մեր ճիգը կը շարունակուի, քառասնամեակ մը տօնել՝ հանգրուան մը հաստատել է, դէպի յառաջ ընթանալու ճամբուն վրայ:

Խիստ պէտք է դատենք մենք զմեզ, եթէ որեւէ տկարութիւն, որեւէ պակաս նշմարենք մեր վրայ, պէտք է մենք մեր առաջադրութիւններով զմեզ դաստիարակենք լաւագոյնս ներկայանալու համար ժողովուրդին:

Պէտք է գիտնալ որ ճահիճները չենք կրնար կենդանի ջրի վերածել: Ինչ որ կայ մեր Սփիւռքին մէջ ժամանակավրէպ, կազմալուծիչ, քայքայող՝ ճահճացած և մեռած ջրի հանգոյն է, եւ անիկէ յոյս չկայ: Բայց այդ իրողութիւնը Թոյլ կու տայ այս ժողովուրդին՝ լաւագոյնս դատելու մտքի հասունութեան եւ հոլովոյթի այն ուղին, որմէ անցած է քառասուն տարիէ ի վեր մեր ներշնչումէն:

Դեռ ունինք շատ ճամբայ կտրելիք, յարատեւ ճիգով, մինչեւ որ մեր ցրօնքը եւ «սփիւռքի» ողբականը վախճան գտնեն, մինչեւ որ հասնինք մեր արդար ակնկալութիւններուն դուռը, մինչեւ որ Մեծ Եղեռնով ծայր տուած խորշակէն դուրս ելլենք, մինչեւ որ Թափառական Հայը իր պապերու երկիրը դառնայ, ուր կը ծաղկի, կը բարգաւաճի, կ'ուռճանայ Հայոց տէրութիւնը, եւ ուր Արարատի գագաթէն ծագող արեւը կը լուսաւորէ մեր ճամբան:

(Լոզան)